# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

Ա. ՏԱՐԻ, ԹԻՒ 4 — ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ. ԱՊՐԻԼ, 1918 — ԳԻՆ ՏԱՍԸ ՍԷՆԹ

## ՄԵԾ ՊԱՀՔԻ

Կարեւոր Պատգամներէն մին

## ՄԱՔՈՒՐ ԿԵԱՆՔ

Երբ տունկերն աճելու եւ արգիւնաւորուելու համար կը կարօտին պարարտ հողի, մշակող ձեռքերու, ջուրի եւ ջերմութեան. երբ արեւը իր լոյսն ու ջերմութիւնը յաւերժացնելու համար արտաքին նիւթերու պէտք կ'ունենայ, մարդն ալ, իբր բարոյական տունկ մը կամ արեւ մը, իր կեանքն արգիւնաւորելու եւ վախճանական նպատակին հասնելու համար կը կարօտի կարգ մը ազդակներու, որոնց սովոր ենք ըսել առաքինութիւն: Աստուածպաշտութիւն, հաւատարմութիւն, խոնարհութիւն, ներողամտութիւն, զոհուիլ, նուիրուիլ, սիրել եւ. եւ. առաքինութիւններ են, սակայն կայ հատ մը որուն կ'ուզեմ ակնարկել, կարծես անոնց ամենուն մայրն է, իրմէն կը ծնին անոնք բոլորն ալ: ՄԱՔՈՒՐ ԿԵԱՆՔՆ է անիկա: Երբեք խորհած ունի՞ս անոր վրան: Այսօրուան աշխարհը, յարեւելից յարեւմուտս, խաղաղութեան ներկայութենէն անմիջապէս յետոյ կը կարօտի, եւ բուռն կերպով, մաքուր կեանքի:

Նիւթական մաքրութիւնը տանին կեանքի մէջ ո՛ր աստիճանի կարեւոր ըլլալը ոչ ոք կրնայ ժխտել: Հարկեցուցիչ է ան առողջութեան ու պատուաւորութեան տեսակէտէն: Աղտոտութիւնը հետեւանք չէ աղքատութեան. ընդհակառակը վերջինս արգիւնք է շատ անգամ անմաքուր ու անկարգ կեանքի: Տան մաքրութիւնը ծախքի չի կարօտիր երբեք: Այն մարմինը կամ տունը որ անմաքուր է, հոն չի կայ ոչ առողջութիւն եւ ոչ հանգստութիւն. հետեւաբար եւ ոչ ալ երջանկութիւն:

Բարոյական կեանքի մէջ մաքրութեան բացակայութիւնը տեղի կուտայ ա՛լ աւելի մեծ եւ տխուր չարիքներու: Բարոյական մաքրութիւնը անտեսանելի է արտաքուստ. ան կը գտնուի մարդուն խորհուրդներուն, սրտին եւ հոգիին մէջ: Ժուժկալ ապրուած կեանքի մը հետեւանքն է մաքուր կեանքը: Ինչպէս որ պարարտ հողը, արեւն ու անձրեւը համ կը դնեն պտուղին մէջ, բոյր կուտան ծաղիկին, այնպէս ալ ժուժկալութիւնը ընդունակ կընէ զմարդ մաքուր կեանքը ապրելու: Եւ եթէ հարցուի թէ ի՞նչն է որ ընդունակ կընէ զմեզ ժուժկալութեան, կը պատասխանեմ թէ կամք մը զօրաւոր եւ տոկուն, եւ ի պատկեր Աստուծոյ ստեղծուած ըլլալու գիտակցութիւն մը խորունկ: Բայց ինչպէ՞ս կարելի է այդ, երբ աշխարհի մթնոլորտը այնպէս ապականած է, որ անկարելի է զերծ մնալ անոր յոռի ազդեցութենէն: Ինչպէ՞ս կարելի է այդ, երբ աշխարհիս այլազան փորձութիւններով այնպէս շրջապատուած ենք, ինչպէս ձուկերը ծովուն մէջ ջուրերով, ինչպէ՞ս, ինչպէ՞ս հնարաւոր է ժուժկալ ըլլալ եւ մաքուր կեանք ունենալ: Մէկ պատասխան կայ այդ ինչպէսներուն. զինուորն ալ պատերազմի դաշտին մէջ պաշարուած է թշնամիէն զանազան վտանգներով, բայց կը կռուի: Եւ չի կռուող զինուորը չի վարձատրուիր: Դուն ալ կռուէ՛ զքեզ շրջապատող փորձութիւններուն դէմ. այդ կռուոյն մէջէն յաղթական դուրս գալով է որ կրնաս տիրանալ մաքուր կեանքի եւ անոր օրհնեալ արգիւնքներուն. կունենաս առողջ մարմին, լուսաւոր միտք, բարի խորհուրդներ, սիրտ մը խոնարհ ու վեհ, եւ հոգի մը անբիծ:

Մարդ էակը իբր տեսանելի պատկեր աներեւոյթին Աստուծոյ՝ կ'արգիւնաւորուի միայն եւ

միայն մաքուր կեանքով, մաքուր կեանքն է որ ընդունակ կ'ընէ զինքը տիրանալու միւս առաքինութեանց:

Մաքուր կեանք մը ապրելու ջանքը թերեւս բաւէ զմեզ, բայց այդ ապառումն է որ պէտք աճեցնէ զմեզ Աստուածպաշտութեան մէջ, մարդասիրութեան մէջ, նուիրուելու և զոհուելու Աստուածային կերպերուն մէջ: Յիշեցէ՛ք Ս. Գրքի Յովսէփն ու Սամուէլը, Հայաստանի Լուսաւորիչը, Կիլիկոյ Շնորհալին, այս երկրին Վաշինկթընը և ուրիշ նման անձնաւորութիւններ, որոնք մաքուր կեանքի տիպարներ են, և ասոնց կեանքի մատակարարը եղող Յիսուսը:

Ինչ որ ասոնց համար կարելի էր, մեզի համար անկարելի չի կրնար ըլլալ: Գործածէ ԿԱՄՔԴ և մի փախցներ պատեհութիւնը:

Մեծ Պահոց մէջ յարգէ՛ հայրենի բարի աւանդութիւններդ, կատարէ կրօնական սուրբ պարտականութիւններդ: Սակայն բաւական չէ միայն խտիր դնել կերակուրներու մէջ, որ եկեղեցւոյ կողմէ տրուած մաքուր կեանքի տիրանալու ողջամիտ կանոններէն մին է, առողջապահական օրէնքով ալ հաստատուած. հապա եթէ խմող ես, մոռցիր ալքոլի ճամբան, մի՛ յաճախեր թատրոն զէթ ժամանակ մը, ուր պակաս չեն երբեք գայթակղեցուցիչ տեսարաններ. հաշտուէ խռովածներուդ հետ. մի՛ բամբասեր, մի՛ ստեր, մաքուր պահէ բերանդ, աղօթէ և օրհնէ: Կին կամ աղջիկ, թո՛ղ պչրասիրութիւնը, հրաժարէ կործանարար նորասիրութենէն, պարզութիւն սիրէ, և ահա տունիդ մէջ պիտի գայ ան, խաղաղութիւն և առատութիւն, ու դուն այլ ևս պէտք պիտի չունենաս գործարաններու մէջ չարաչար աշխատելու, կեանքդ մաշեցնելու և վաղաժամ թառամելու:

Մաքուր կեանքի աղբիւրը եկեղեցին է, որ ինչպէս միշտ, Մեծ Պահքի եօթը շաբաթներուն ալ աւելի լայն պատեհութիւն կուտայ քեզի որ առատօրէն խմես իր կենդանարար ջուրէն, մաքրես ներքին մարդդ իր բիծերէն ու արատներէն: Յաճախէ՛ հոն աղօթելու, Աստուծոյ հետ յարաբերութեան մէջ ըլլալու, պահ մը զէթ հոգեւոր կեանքը ապրելու միակ նպատակաւ, ուշադիր եղիր ընթերցուած Ս. Գիրքերուն, մանաւանդ՝ սրբազան երգերուն, որոնք համակ էութիւնդ պիտի առինքնեն, ու մաքուր մթնոլորտի մը մէջ պիտի բարձրացնեն: Հետեւէ՛ խօսուած քարոզներուն, վար իջիր հպարտութեանդ բարձունքէն, մի՛ խրաչիր, մի՛ ամաչեր. ճակատաբաց սիրէ այդ կերպերը և համարձակ եղիր: Մեծ Պահքը Եկեղեցիով մեծ կեանք մը պիտի պարգեւէ քեզի, քան ինչ որ դուն կը կարծես թէ ունիս, մաքրուած, նորոգուած, և՛ մարմինով և՛ հոգիով: Եւ մաքուր կեանքը այն պարարտ հողն է, ուր կրնան բուսնիլ և աճիլ բարոյական աշխարհին մէջ ծանօթ բոլոր առաքինութիւնները: Մաքուր կեանք մը ունեցիր: Մեծ Պահքի կարեւոր պատգամներէն մին է ասիկա:



## ՄԵԾ ՊԱՀՔ

Աշխարհս հսկայ թատերաբեմ մըն է, որուն վրայ անձնիւր մարդկային էակ դեր մը ունի կատարելիք: Եկեղեցին իբրեւ ճշմարիտ ուսուցիչ և անաչառ դաստիարակ, խանձարուրէն մինչև գերեզման, կ'ուսուցանէ և կը հրահանգէ իր հաւատացեալները, որպէս զի անոնք իրենց դերերուն մէջ ունենան այն հաճեալ ու պարկեշտ կեանքն, որ վայել է ի պատկեր Աստուծոյ ստեղծուած մարդուն, խորհին և խօսին, ապրին և գործեն այնպէս՝ ինչպէս իր հիմնադիրը Քրիստոս ու անոր հետևող բոլոր բարի անձնաւորութիւնները: Հայաստանեայց Եկեղեցին իր Աստուածային յուշարար Մեծ Պահոց եօթն շաբաթներու միջոցով կ'ազդարարէ իր զաւակներուն և ի յուշ կը բերէ մեծ թատերաբեմին վրայ մեր ունեցած սխալներն ու մոռացումները և կ'առաջնորդէ զանոնք դէպի զղջում, դէպի բարձրագոյն գիտակցութիւն և դէպի յաւիտենական կատարելութիւն:

Շատ կարճ կերպով պիտի կրնանք ըսել թէ այդ եօթն շաբաթները կարգով ինչ կը յիշեցնեն մեզի, ինչեր կը խօսին մեր սրտերուն:

Առաջին Շաբաթ — *Մարդու անկումը:* Առաջին շաբաթը եկեղեցւոյ Ար. խորանները սեւ վարագոյրներով ծածկելու ցոյցով մեր միտքը կը ձգէ, որ առաջին մարդը և առաջին կինը իրենց Արարչին տուած պատուէրին հակառակ գործելով յաղթուեցան զիրենք փորձողէն: Յանցանքը գործուած էր և ինկաւ առաջին մարդը:

Երկրորդ Շաբաթ — *Արտաքսումն:* Յանցանքի բնական հետեւանքն է պատիժը, ինչ որ չուշացաւ. մինչեւ այդ պահը լսուած հայրական սիրոյ ձայնին տեղ անոնց ականջին հասաւ վրէժխնդիր տիրոջ մը յանդիմանական սաստն ու անէծքը, և անոնք



խոկոյն արտաքսուեցան Եդեմ կոչուած գեղեցիկ պարտէզէն, ուր ոչ վիշտ կար և ոչ կարիք, այլ անմեղ կեանք ու անխառն երջանկութիւն:

Երկու դէպքերէն ալ եզրակացնելով կըսենք. Դուն ալ ունիս քու Եդեմի կեանքդ, ո՛վ մարդ, անմեղ, երջանիկ ու Աստուածամերձ կեանքդ, ուստի ունիս նաև փորձողդ: Ս. Գրքի մէջ պատմուած մեր նախահարց պատմութիւնը՝ պատմութիւնն է անխուսափելի ամեն մէկ անհատի: Ամեն ոք ի սկզբան անմեղ է ու երջանիկ, ու ամեն մարդու կը մօտենայ օձ փորձիչը, չար ընկերը կամ երեւակայութիւնը, ու յանցանքը գործել տալով արտաքսել կու տայ զինքը դրախտէն, կորսնցնել կու տայ իր անմեղութիւնը ու երջանկութիւնը: Թիկնդ պատուար կարգէ ապրած կեանքիդ վրայ, ու եթէ քեզի ալ պատահած չէ նոյն բանը մէկէ աւելի անգամներ, լուր տուր մեզի, և մենք զքեզ երկրորդ Քրիստոս մը պիտի հռչակենք:

Երրորդ Շաբաթ — Անառակը: Այսպէս մարդ անառակեցաւ ու հեռացաւ իր Հօրը տունէն, Աստուծմէ: Մարդու այդ վիճակին պատկերը շատ ճարտար գոյներով նկարած է Յիսուս Ղուկասու Գլուխ ԺԵ-ին մէջ. կարդա ուշադրութեամբ. իմ և քու և ամբողջ մարդկութեան պատմութիւնն է անիկայ: Աստուծոյ խօսքը լսելու և զայն կատարելու մասին սաստիկ սով կը տիրէ մեր մէջ, որոյ երեսէն է որ կը տանջուի մարդկութիւնը. բայց տակաւին չենք զգաստանար, չենք կրնար որոշել և ըսել՝ «Ելլեմ հօրս տունը երթամ», վերադառնամ նախնական անմեղութեանս. ամեն մարդ ինծ եղբայր և զԱստուած ալ մեր հայրը նկատելով սիրեմ զիրենք:

Չորրորդ Շաբաթ — Տնտեսը: Բարի Աստուծմէն նիւթապէս իբրև հրաշալի մեքենայ մը շինուած մարդկային մարմինը հարուստ է նաև բարոյական սքանչելիքներով. օժտուած է ան խորհելու, խօսելու, բարին ու չարը որոշելու կարողութիւնով, սիրելու և ատելու զգացումներով, ինչպէս նաև իր կարգին մեծամեծս գործելու իմաստութիւնով, և ատոնք բոլորը իր ուզած եղանակաւ գործածելու ազատ կամքով: Մարդ Աստուծոյ զաւակն է և գործակատարը. իր անձին մէջ և դուրսը ինչ որ կայ, անկէց իբր աւանդ ստացած է, սեփական ոչինչ ունի: Աւետարանական բացատրութեամբ տնտես է: Կարդա Ղուկաս ԺԶ: Այս ալ պատմութիւնն է իւրաքանչիւր մարդու, որ պարտի իր բոլոր ուժերը իմաստութեամբ գործածելով ըլլալ արթուն և հաւատարիմ տնտես մը և ունենալ կեանքի և ինչքի գործածութեան մաքուր հաշիւ մը ի ձեռին ամեն վայրկեան:

Հինգերորդ Շաբաթ. — Դատաւոր: Կարդա՛ Ղուկաս Գլ. ԺԶ: Քրիստոս՝ մարդոց Աստուծոյ հետ անդադար յարաբերութեան մէջ ըլլալու կարեւորութիւնը կը շեշտէ այդ առակով, ու անոր հետ խօսելու, աղօթելու, այնպիսի գերազանց բանաձև մը ցոյց կուտայ, Հայր Մերը, որուն մէջ Աստուծոյ ընդհանրական Հայրութեան, մարդոց որդիութեան եւ միմիանց եղբայրութեան ու ոգեղէնական խաղաղութեան ծրագիրը և զուանդրաստուածային իմաստութեամբ խօսուած է: Ամեն մէկ Քրիստոնեայ թող ջանայ այդ բանաձեւի իմաստին խոր թափանցել, անոր նպատակները ըմբռնել, և ինքզինք այդ նպատակներուն իրականացման վսեմ գործին նուիրել, և ահա երկիրը երկինքի պիտի փոխուի:

Վեցերորդ Շաբաթ — Գալստեան: Վեցերորդ կիրակին կը յիշեցնէ մեզի Քրիստոսի երկրորդ անգամ աշխարհ գալը, կամ աշխարհի վախճանը: Այդ օրը եկեղեցւոյ մէջ կը կարդացուի Ղուկասու Աւետարանին ԺԷ. գլուխը, ուր Քրիստոս կը խօսի այդ մասին: Սկիզբն ունեցող աշխարհը օր մը վերջ ալ պիտի ունենայ և Քրիստոս երկրորդ անգամ ալ պիտի գայ: Այս երկու իրողութիւններն ալ կը հաստատուին Ս. գրական և գիտական փաստերով, սակայն այժմ մեր նպատակէն դուրս է առնելով զբաղիլ: Անոր գալստեան սպասելու հաւատքով զուարթաց ըրէ քու դէպի անոր երթալդ, խաղաղ կեանքով ու բարի գործերով:

Եօթներորդ Շաբաթ — Ծաղկազարդ: Այդ կիրակին Եկեղեցին հանդիսաւոր կերպիւ կը տօնէ Քրիստոսի վերջին անգամ, իր կողմանէ պարզ ընթացքով՝ բայց ժողովրդեան կողմանէ արտայայտուած խանդավառ ցոյցերով, մուտքի յիշատակն յԵրուսաղէմ: Ուշադրութեամբ դիտէ թէ ինչպէս լրջութեամբ կը յառաջանայ Նա այդ ովսաննաներու ցնծութիւններուն մէջէն. ոչ այդ փառքն ու պատիւները կրցին յափշտակել զինքը և ոչ ալ անոր յաջորդող ծաղրն ու խաչին տառապանքը կրցին խռովել. ինք գիտեր իր բուն նպատակն ու փառաւորեալ յարութիւնով Եկեղեցին հաստատեց, որուն մէջ ուշ կամ կանուխ պիտի հաւաքուին ու եղբայրանան մարդկային բոլոր ցեղերը: Հաւատա՛ անոր: Հաւատա՛ նաև որ շատ մերձաւոր նմանութիւն կայ Քրիստոսի կեանքին և մեր ցեղին մէջ, որ այս պահուս խաչելութեան ճամբուն վրայ կը գտնուի: Յոյսդ մի կորսներ, աղօթէ՛, գործէ՛ և յուսով սպասէ ու պիտի տեսնես անոր ալ Յարութիւնը:

22

## ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ ՓԱՌՔԸ

Ո՞րն է ամենէն անմեղ փառքը որուն մարդ կրնայ ցանկալ. արդեօք ա՞յն որ կուգայ աշխարհակալութեան համար շարժող զէնքի արժուկներէն. ա՞յն որ գիտութեան բարձրագոյն աստիճան մըն գեղարուեստի այլ և այլ ճիւղերուն մէջ արտափայլած բացառիկ հանճարներ կրնան տալ մարդուն: Կը կարծէ՞ք թէ միլիոնատէրներ փառքի նշոյլ մը իսկ կրնան ունենալ իրենց ոսկիներու դէզերով, եթէ անոնցմէ առատօրէն չեն գործածեր բարենպատակ ձեռնարկի և գթութեան հաստատութեանց համար: Մարդս ի բնէ փառասէր ըլլալով չկրնար գործի մը մէջ քալել եթէ փառքը իրեն չի հետևի: Աւելի բնական ըլլալով Ս. Գիրքը մեզի կուսուցանէ, ինչպէս մեր կեանքը, այնպէս ալ մեր հանճարը, մեր տաղանդը, մեր հարստութիւնը, մեր ամեն ինչը, մեր փառքն ալ Աստուծոյ փառքին համար գործածել, որպէս զի հպարտութեան փորձութեան ենթարկուելով վար չի գահավիժինք մեր գտնուած բարձրութենէն:

Ամենէն անմեղ փառքը որ մարդ կրնայ ունենալ և նուիրել Աստուծոյ, բարեգործութիւնն է: Երբ մարդ մը կարեկցութեամբ ու գորովով լեցուած է, և նուիրուած է իր նմաններուն ծառայութեան, կամաւ խոնարհած է ամենայնաւին ըլլալու. կը զոհէ իր ինչքը, նոյն իսկ իր կեանքը, երբ իր սէրը շատերուն սէրը և երախտագիտութիւնը արթնցուցած է. միթէ փառքը ինքնին չի՞ ծնիր անոր մէջ, ճշմարիտ փառքը, ջինջ փառքը, որուն ճառագայթները դէպի երկինք կը ցոլանան: Սիրէ՛ դուն այդ փառքը և ցոյց տրուած միջոցներով ջանա ձեռք բերել զայն: «Աստուած ողորմած է» ասացուածը մեր մէջ, մարդոց ձեռքով եղած բարեգործութիւնը կամ տրուած ողորմութիւնը մատնանիշ կընէ. հետեւաբար բարեգործութեան մէջ Աստուածացում կայ. դուն չե՞ս ուզեր Աստուածանալ: «Առանց կուսութեան կրնաս մտնել երկինքի արքայութիւնը, բայց առանց բարեգործութեան՝ ոչ» կըսէ Ոսկեբերան: Դժուար չէ: Օգնէ՛ ճշմարիտ աղքատին, գործաւորին աշխատութիւնը մի՛ ծանրաբեռներ: Անգթութիւնը կը հալածէ, դուն ժողվէ և մխիթարէ. ան կը կործանէ արժանիքի ակերը և հրապարակը կը լեցնէ թշուառներով, դուն պաշտպան եղիր անոնց և լեցուր իրենց պէտքերը: Իրենց անձնական փառքը որոնողներուն երեսէն աշխարհս որբանոցի է վերածուած: Այդ որբերու մեծագոյն մասը քու ցեղէդ կը պատկանի. օգնէ՛ անոնց ու Աստուածային փառք մը շինէ քեզի համար: Քրիստոնէական ոգիութեամբ նետուէ՛ բարեգործութեան դաշտին մէջ որ աւելի քան երբեք ընդարձակ է այսօր: Տառապանքի անապատներուն մէջ անպատսպար ու ոտխալլուկ մարդիկ դայթակղած են Աստուծոյ արդարութեան վրայ, տարուած է իրենց հաւատքը: Երբ հազարաւոր բարեգործ մարդիկ իրենց արդիւնքը միացնելով հասցունեն հոն, անոնց վէրքերը կը բուժուին, աւերութիւնները կը մարի, կործանուած սրտերը կը կակուղնան, անէծքները օրհնութեան կը փոխուին, սէրը կը փայլի: Անմեղ փառասիրութիւնը շարժառիթ թող ըլլայ քեզի, որ այդպիսի գեղեցիկ արտայայտութեանց պատճառ ըլլաս: Սակայն բարեգործը չի կրնար ըլլալ չարագործ. ողորմութիւն տուողը չի կրնար ըլլալ յափշտակիչ մը: Բարեգործութիւն և ողորմածութիւն համանիշ են, երկուքն ալ նոյն անմեղ փառքին կ՚առաջնորդեն զմարդ, որուն տիրանալու համար ներկայէն աւելի յարմար պատեհութիւն չես կարող գտնել, բարեգործութիւնը կեանքիդ անունը ըրէ՛, ողորմէ՛ անդադար, այդպէս ընելը բնական պարտականութիւններէդ մին նկատէ, ու անձիդ նկատմամբ ունեցած ունակութիւններէդ մին պիտի դառնայ ան: Ու շուրջդ փառք մը պիտի ծաղի որ անմեղ է, երկնային է: Մի՛ զրկեր ինքզինքդ այդ փառքէն:

«Տուր ողորմութիւն, և ամենայն ինչ սուրբ է ձեր»:



## ԿԻՐԱԿՆՕՐԵԱՅ ԴՊՐՈՑ

Կիրակնօրեայ Դպրոցը, ամբողջ Ամերիկայի մէջ, ամենէն կարեւոր կազմակերպութիւններէն մին է: Իսկ Ֆրէզնոյի Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ Կիրակնօրեայ Դպրոցը ամբողջ Ամերիկահայոց մէջ առաջին տեղը կը գրաւէ, ուր կրնան յաճախել ոչ միայն քաղաքին մէջ բնակող՝ այլ և այգեստաններու մէջ հաստատուող բոլոր տղաքները ու աղջիկները, քանի որ երթեւեկութեան ամեն դիւրութիւններ կան:

Ծնողնե՛ր, Կիրակնօրեայ Դպրոց բերէք ձեր զաւակները ու մի՛ զրկէք զանոնք անոր բարիքներէն, և աւելի աննման առիթ մը պիտի ըլլայ ձեզի համար ալ եկեղեցի յաճախելու:



## ԿՐՕՆԱԿԱՆ ԱՆՏԱՐԲԵՐՈՒԹԻՒՆ ՄԸ

Թող ներուի ինծ մատնանիշ ընել Ամերիկահայ կեանքին մէջ տեսնուած կրօնական մէկ անտարբերութիւնը, որոյ երեսէն երբեմն լուրջ անպատեհութիւններ կը ծագին ժողովուրդին և եկեղեցականին միջև :

Հայ Եկեղեցին ունի եօթն խորհուրդներ և կը մատակարարէ զանոնք իր զաւակներուն, որոնց միջոցաւ կը հաւատանք, թէ հոգեկան փոփոխութիւն մը կ'ենթարկուինք և երկնային շնորհքի մը կ'արժանանանք : Այդ խորհուրդներէն առաջինն է Մկրտութիւնը, որով միայն մարդ Քրիստոնեայ կրնայ ըլլալ :

Թողունք Փրէզնոյի նման բազմահայ գաղութ մը, ուր բազմաթիւ են չի մկրտուած երախաներ, Լօս Անճէլըսի Հայ Եկեղեցւոյ 500ի չափ ժողովրդեան մէջ յիսունէ աւելի են անոնք, որոնց ծնողքը բնաւ հոգ չեն տանիր անոնց մկրտութեան և Քրիստոնեայ անուանակոչութեան մասին : Պիտի զարմանաք անշուշտ երբ ըսեմ թէ անոնցմէ շատեր արդէն 15-16 երիտասարդական տարիքը թեւակոխած են : Ողջ մարմնոյն Քրիստոնէական շնորհապարգև խորհուրդը մատակարարելու անփոյթ ծնողք, մահ պատահած ատեն պարագային՝ եկեղեցականին վրայ կը ծանրանան Քրիստոնեայ անուանէն զուրկ դժբաղդ դիակին վրայ եկեղեցական կարգ կատարել տալու, ինչ որ չունի մեր եկեղեցին :

Ահա այս ցաւալի իրողութեան տեղի չտալու համար է որ այցելութեանցս միջոցին և եկեղեցւոյ բեմէն յաճախ կը յիշեցնեմ չի մկրտուած երախայ ունեցող ծնողքներուն փութալ կատարել իրենց քրիստոնէական առաջին պարտականութիւնը, սակայն շատ են անոնք որոնք մեր ձայնը չեն լսեր տակաւին : Երբ անկնունք երախան մեռնի ու մենք չենք թաղեր, պատասխանատու չենք :

Սոյն կարեւոր հարցը ներկայացնելով ձեր խորին ուշադրութեան, կը խնդրեմ, որ «Էջմիածին» կրօնաթերթիդ միջոցաւ շեշտէք և զգացնէք մեր ժողովուրդին, ու անդրադառնաք յաճախ թէ այս և թէ ուրիշ շատ մը զանց առնուած պարտականութեանց մասին :

Այս առթիւ ուրախութեամբ անգամ մը եւս կը յայտարարեմ, որ «Էջմիածին»ը իբր կրօնա-բարոյական թերթ յոյժ զգալի պակաս մը կը լեցնէ Ամերիկահայ կեանքին մէջ : Անոր նկատմամբ հետաքրքրութիւնը հետզհետէ կ'աւելնայ Լօս Անճէլըսի մէջ . իցի՛ւ թէ ուրիշ գաղութներ ալ այսպէս արտայայտուէին, և տարակոյս չի մնար թէ մերձաւոր ապագայի մէջ զուք պիտի կրնաք աւելի ընդարձակել անոր ծաւալը և ընել աւելի ճոխ և աւելի շինիչ թերթ մը հարիւր հազար բռուած Ամերիկահայ գաղութին համար :

Մաղթելով յաջողութիւն՝ մնամ աղօթարար

ԱՏՈՄ ՔՀ. ՄԵԼԻՔԵԱՆ

* * *

«ԷՋՄԻԱԾԻՆ» — Սոյն կարեւոր խնդրոյն վերաբերմամբ Տէր Ատոմ Քահանայի թելադրական գրութեան տեղ տալով, մեր կողմանէ կ'աւելցնենք թէ մեր Եկեղեցին Առաքելական դարերէն ի վեր ընդունած է մանկամկրտութիւնը, ի միջի այլոց այն ըմբռնումով որ առանց մկրտուելու մեռնողը Քրիստոնեայ չէ : Ուստի հաւանական վտանգի մը առջև պատասխանատու չի մնալու համար կը մըկրտէ նորածինը, փոխանորդ մը —կնքահայրը— կեցունելով անոր մօտ, որն որ յանձնառութիւն ունի, երախային աճման համեմատութեամբ, Քրիստոնէական ծանօթութիւններ տալ անոր : Այս գրութեամբ մկրտութեան խորհուրդին մէջ երախային անհասկացողութեան տկարութիւնը դարմանած է եկեղեցին, և կուզէ որ, քրիստոնէութեան մէջ մարդկային էակ մը որ «բանայ զարգանդ՝ սուրբ Տեառն կոչեսցի» շնորհաց օրէնքին մէջ Մկրտութեամբ, և չ'կամիր որ առանց այդ փրկարար շնորհին արժանացնելու մեռնի ան : Հետեւաբար ամէն անգամ որ ընտանեկան յարկ մը կ'օրհնուի զաւակով մը, ծնողք նախանձախնդիր ըլլալու են որ Քրիստոնէական վայրկեաններէն առաջինը, մկրտութեան փրկագործ խորհուրդը, շուտով մատակարարուի անոր :

Եկեղեցականք ալ իրենց կարգին խօսելու են յաճախ և վճիտ ու համոզիչ բացատրութիւններով լուսաբանելու են ժողովուրդը և անոնց սիրելի ընծայելու են Եկեղեցւոյ սուրբ խորհուրդները, որոնց մասին մեր ժողովուրդին մեծագոյն մասը դժբաղդաբար չունի պէտք եղած տեղեկութիւնը : Մեր պարտքն է խօսիլ, լուսաբանել և համոզել, և ահա ժողովուրդը ինքնին պիտի մօտենայ անոնց :



# ԱՐԵՒԱԳԱԼԻ ԵՐԳԵՐԸ

---

Մեծ Պահքին, մեր հայրենի եկեղեցիներուն մէջ, Արեւագալի երգերը մեծ ազդեցութիւն յառաջ կը բերէին, ու հաւատացեալ ժողովուրդը խուռն բազմութեամբ կը դիմէր հոն և հոգեկան ճշմարիտ սփոփանք մը կըգտնար: Հոգեոր կեանքի այդ հաճելի եռուզեռն ալ աւերակներու տակ մընաց այժմ:

Սիրելի է յուսալ որ Ամերիկահայերէն գէթ այն գաղութները որոնք եկեղեցի ու եկեղեցական յարմարութիւններ ունին, շաբթու մէջ կամ երբեմն կիրակի առաւօտները անպատճառ իրենց եկեղեցիներուն մէջ պիտի ուզեն երգել Արեւագալի երգերը: Եւ քանի որ հազուագիւտ է ժամագիրքը, դիւրութիւն մը ընծայած ըլլալու մտօք՝ յարմար սեպեցինք հրատարակել զանոնք «Էջմիածին»ի այս ներկայ թիւոյն մէջ, յանձնարարելով որ ըստ կարելւոյն ջանադիր ըլլան ներդաշնակ երգելու զանոնք, և միենոյն ժամանակ հետամուտ ըլլան խորը թափանցելու այն գեղեցիկ զգացումներուն և հոգիին որոնք արտայայտուած են այդ սրբազան բանաստեղծութեանց մէջ:

* * *

## Երգ Արեւագալին

Յարևելից մինչ ի մուտս, ի հիւսիսոյ և ի հարաւոյ ամենայն ազգք և ազինք յօրհնութիւն նոր օրհնեցէք զարարիչն արարածոց, որ ծագեաց ըզլոյս արեգականն այսօր յաշխարհս:

Եկեղեցիք արդարոց՝ փառաբանիչք ամենասուրբ Երրորդութեանն, յառաւօտս լուսոյ զառաւօտ խաղաղութեան Քրիստոս գովեցէք ընդ Հօր և Հոգւոյն, որ ծագեաց զլոյս գիտութեան իւրոյ ի մեզ:

Յարևելից յարեւմուտս մանկունք Սիոնի օրհնեցէք միշտ անդադար զծագողն լուսոյ:

Եկեղեցիք արդարոց և փառաբանիչք, բարեբանեցէք որ ետ զիմաստս լուսոյ:

## Երգ

Ճգնաւորք Աստուծոյ և ժառանգորդք երկնից արքայութեան, որք փոխանակեալք զանցաւորս առիք զանանցն բարութիւնս. բարեխօսեցէք առ տէր վասն մանկանց եկեղեցւոյ:

Նահատակք պանծալիք և սիրեցեալք ի յերկնաւոր Հօրէն, որք մկրտեցայք ընդ Քրիստոսի արեամբ ձերով ի մահ խաչին. Բարեխօսեցէք:

Մարտիրոսք ցանկալիք եւ օծեանք Հոգւոյն ճշմարտութեան, որք յաղթեցիք հոգւով կարեաց և ցանկութեանց. բարեխօսեցէք:

Գովելիք աշխարհի և բաղձալիք վերնոցն պետութեանց, որք երանութեան մասին հասիք քան զամենայն որդիս մարդկան. բարեխօսեցէք:

Կամաւոր պատարագք՝ մանկունք տիօք, և կատարեալք իմաստութեամբ. որք փոխանակ կաթին արբիք զգինին զմայլեցուցիչ. բարեխօսեցէք:

## Յորդորակ

Ճգնաւորք ճշմարիտք վկայք Քրիստոսի, բարեխօսեցէք առ տէր վասն անձանց մերոց:

Նահատակք կենդանիք սիրողք Քրիստոսի, որք չարչարեցայք մարմնով վասն անուանն տեառն:

Մարտիրոսք ցանկալիք, մարդկան ըղձալիք, հայցեցէք ի սուրբ Հոգւոյն տալ մեզ զբարիս:

Գովելիք վերնոց դասուց պարծանք աշխարհի խնդրեցէք զխաղաղութիւն տալ եկեղեցւոյ:

Կամաւոր սուրբ պատարագք հասակաւ մանկունք, հայցեցէք լինել և մեզ ձեզ պսակակիցք:

## Երգ

Լոյս արարիչ լուսոյ առաջին լոյս բնակեալդ ի լոյս անմատոյց՝ Հայր երկնաւոր՝ ի դասուց լուսեղինացն օրհնեալ. ի ծագել լուսոյ առաւօտուս ծագեա ի հոգիս մեր զլոյս քո իմանալի:

Լոյս ի լուսոյ ծագումն արեգակն արդար՝ անճառ ծնունդ Հօր որդի, յառաջ քան զարեւ անուն քո գովեալ ընդ Հօր. ի ծագել լուս:

Լոյս ի Հօրէ բղխումն աղբիւր բարութեան Հոգին սուրբ Աստուծոյ՝ մանկունք եկեղեցւոյ ընդ հրեշտակս զքեզ բարեբանեն. ի ծագել լուսոյ առաւօտուս:

Լոյս երրեակ և մի անբաժանելի սուրբ Երրորդութիւն, զքեզ ընդ երկնայնոցն երկրածինքս միշտ փառաւորեմք. ի ծագել:

## Յորդորակ

Անեղանելիդ Աստուած Հայր ամենակալ, ընկալ զաղաչանս մեր քոց պաշտօնէից:

Ի Հօրէ ծագումն անճառ արեգակն արդար, ծագեա ի յանձինս մեր զլոյսդ ողորմութեան:

Ի Հօրէ բղխեալ Հոգի աղբիւր բարութեան, լուսով քով լցո զմեզ յայսմ առաւօտուս:

Երեք անձինք և մի բնութիւն, մի աստուածութիւն. զքեզ խոստովանիմք յաւէտ սուրբ Երրորդութիւն:

Երգ

*Ճանապարհ և ճշմարտութիւն և կեանք Քրիստոս, առաջնորդեա հոգւոց մերոց յերկրէ ելանել յերկինս։*

*Դուռն կենաց մաքր Յիսուս, մոյծ և զմեզ առ հայր քո և հոգի, երգել միշտ զփառս։*

Յորդորակ

*Ճանապարհ բարի Քրիստոս և ճշմարտութիւն, առաջնորդ հոգւոյ մերոյ յերկրէ ի յերկինս։*

*Դուռն կենաց մաքր Յիսուս Աստուած ճշմարիտ, մոյծ և զմեզ առ հայրդ քո հոգւովդ սրբով։*

---

## ՀՐԱՒԻՐԱԳԻՐ ԵՐԵՍՓՈԽԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՅ

*Ամերիկահայ Սահմանադրութեան 7րդ, 8րդ և 32րդ յօդուածներուն համեմատ, վերջին Դեկտեմբերին Ազգ. Առաջնորդարանէն բոլոր թեմերուն ուղղուած հրահանգին վրայ, Երեսփ. Ժողովի անդամոց ամբողջական վերընտրութիւնը կատարուած և պաշտօնապէս ձեռնհաս մարմնոց կողմանէ Առաջնորդարանիս տեղեկագրուած ըլլալով, Ազգ. Կեդրոնական Վարչութեան որոշմամբ՝ կը ծանուցուի, թէ Երեսփոխանական Ժողովի նոր Շրջանին առաջին նիստը պիտի գումարուի Ապրիլ 7ին (1918), Կիրակի օրը, Ուստրի Ս. Փրկիչ Եկեղեցիին Ազգ. Ժողովասրահին մէջ։ Նիստը պիտի բացուի յաւարտ Ս. Պատարագի՝ առաւօտեան ժամը 10-30ին։*

*Հաղորդելով զայս ի գիտութիւն, ներկայ շրջաբերականով կը հրաւիրենք նորընտիր Երեսփոխանութիւնը* ճիշդ ժամանակին *ներկայ գտնուիլ ժողովին։*

*Ի դիմաց Ազգ. Կեդր. Վարչութեան*
Վ. Ատենապետի՝ Եղիշէ Քահ. Գալչըճեան
Ատենադպիր՝ Մաղաք Գ. Պէպէքեան
Նախագահ և Տեղապահ՝
Շահէ Ծ. Վ. Գասպարեան

*Օրակարգը հետեւեալն է՝*

1. Բացման աղօթք և Երեսփոխանաց ստուգում. 2. Դիւանի ընտրութիւն. 3. Ընթերցում նախորդ ժողովի արձանագրութեան. 4. Տեղեկագիր Կեդր. Վարչութեան. 5. Ընտրութիւն Կեդր. Վարչութեան. 6. Տեղեկագիր Սահմանադրութեան Վերաքննիչ Յանձնաժողովին. 7. Ազգ. Միութեան Կեդրոնի երեք ներկայացուցիչներու ընտրութեան խնդիր. 8. Գալիֆօրնիան զատ առաջնորդութեան վերածելու խնդրոյն քննութիւնը՝ ըստ հրահանգի Ամենայն Հայոց Վեհ. Հայրապետին. 9. Ընտրութիւն առաջնորդի. 10. Նոր խնդիրներ։

## ԿՈՉԻ ՄԸ ԱՌԹԻՒ

*Մեզի ղրկուած է «Կոչ մը» հրատարակութեան խնդրանօք։ Կը ցաւինք որ «Էջմիածին»ի անձուկ սիւնակները թոյլատու չեն անոր ամբողջական հրատարակութեան։ Ուստի համառօտ ամփոփումը միայն կը դնենք հոս։*

*Կոչը ուղղուած է Եփրատ Գոլէճի ուսուցիչ՝ Փրօֆ. Ա. Լիւլէճեանի աշակերտներուն և բարեկամներուն և կը յայտարարէ թէ հանգանակութիւն մը բացուած է պարտականութեան ճամբուն վրայ մեռնող Լիւլէճեանի թշուառ ընտանիքին որ Կովկաս ապաստանած է։ Կոչը կը վերջանայ հետեւեալ խօսքերով.*

*«Յուսով ենք որ որքան Եփրատի սաները Ալյանդեանէն մինչև Խաղաղական, նոյնպէս բոլոր այն ազնիւ հոգիները, որոնց կը հասնի այս կոչը, պիտի հաճին իրենց մարդկային ազնիւ պարտականութեան բաժինը բերել՝ ատատրած ըլլալու համար ողբացեալ Փրօֆ. Լիւլէճեանի ընտանեաց, որոնք այնքան ողբալի դրութեան մը տակ կը հեծեն։*

*Նուէրները ղրկել՝ Հրաչ Երուանդի,*
814 Օլտ Սաւթ պիլտինկ, Պօսթոն։

---

## ՏՕՆԱՑՈՅՑ

ԱՊՐԻԼ

6. Շաբաթ ԲԿ. — Ի. օր Մեծ Պահոց. Տօն է Սրբոյն Յովհաննու Երուսաղէմայ Հայրապետին եւ.

7. Կիր. ԳՁ. — ԻԱ. օր և Դ.րդ Կիրակի Մեծ Պահոց։ Տնտեսին։

13. Շաբաթ. ԲՁ. — ԻԷ. օր Մեծ Պահոց. Տօն Սրբոց Մանկանցն Քառասնից, որք ի Սեբաստիա կատարեցան։

14. ԿԻՐ. ԲԿ. — ԻԸ. օր և Ե.րդ Կիրակի Մեծ Պահոց։ Դատաւորին։

20. Շաբաթ. ԱԿ. — ԼԴ. օր Մեծ Պահոց. Տօն Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ սոսկալի չարչարանացն և մտին ի Վիրապն։ Դարձեալ Տօն Աւետման, ըստ հին Տոմարի Ապրիլ 7։

21. ԿԻՐ. ԲՁ. — ԼԵ. օր և Զ.րդ Կիրակի Մեծ Պահոց։ Գալստեան։

27. Շաբաթ. ԱՁ. — ԽԱ. օր Մեծ Պահոց։ Յիշատակ Ղազարու Յարութեան։

28. ԿԻՐ. ԱԿ. — ԾԱՂԿԱԶԱՐԴ։ Տօն Գալստեան Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի ի Տաճարն։ Երեկոյին Դռնբաց։



## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ
## ԼՈՒՐԵՐ ՈՒ ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ



### ՀՈՎՈՒԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆ

*Ֆաուլըրի Եկեղեցւոյ հովիւ ընտրուեցաւ Տ. Մելքիսեդեկ Քահանայ Տէր Մկրտիչեան, Տէր Թէոդորոս Քահանայի տեղ, որ երեք տարիներէ ի վեր կը վարէր նոյն եկեղեցւոյ հովուութիւնը, և այս անգամ բացարձակապէս հրաժարած էր ընտրելի ըլլալէ:*

*Ֆաուլըրի նորընտիր Հոգաբարձութեան անդամներն են՝ Տիարք Մկրտիչ Համբարձումեան, Ճ. Յայտճեան, Գէորգ Թէրզեան, Մանասէ Իսկէնտէրեան և Ն. Շամչեան, : Ընդհանուր ժողովոյ Ատենապետն է՝ Պ. Գ. Մանուկեան, Ատենադպիրը՝ Ս. Պէրպէրեան:*

* * *

Եդեմ.— *Եդեմի Եկեղեցին երկար տարիներէ ի վեր կը մնայ անհովիւ: Ներկայ տարուան համար հոգաբարձու ընտրուած են՝ Տեարք Ն. Սպէնճեան՝ Ատենապետ, Ն. Յովսէփեան՝ Ատենադպիր, Յ. Ֆէրէչէթեան՝ Գանձապահ, Մ. Թումանեան և Մ. Մ. Օհաննէսեան՝ անդամք: Ընդհանուր ժողովոյ ատենապետ՝ Աստուր Պետոյեան, Ատենադպիր՝ Յ. Նազարէթեան: Եդեմի Եկեղեցին ունի նաև Եկեղեցասէր Տիկնանց ընկերութիւն մը:*

* * *

*Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ Եկեղեցասէր Տիկնանց վարչութիւնը կազմակերպուած է հետևեալ կերպով. Տիկնայք՝ Հռիփսիմէ Տալիթեան՝ Ատենապետ, Եղիսաբեթ Գրիգորեան՝ Ատենադպիր, Փեփրոն Գաւոյեան, Հայկանուշ Մոմճեան, Վարդուհի Թայեան, Վիրգին Եազճեան և Զարուհի Յօլիկեան՝ անդամք:*

* * *

*Մկրտութիւնք —*

*Փետրուար 23ին Միհրան Շահպազեանի երախան՝ Աստղիկ:*

*Փետր. 24ին, Յակոբ Յակոբեանի երախան՝ Արաքսի:*

*Մարտ 3ին, Գէորգ Քէհեաեանի երախան՝ Սարգիս:*

*Մարտ 15ին, Ահարոն Ղազարեանի երախան՝ Գեղամ:*

*Մարտ 17ին, Պօղոս Արմուտլեանի երախան՝ Յակոբիկ:*

* * *

*Մահագրութիւնք —*

*Տիկին Վիրգին Եանըգեան, Մարտ 9ին:*

*Մինաս Զաղացպանեան, Մարտ 15ին:*

*Արսէն Մէրճանեան, Մարտ 15ին:*

*Ահարոն Յագոյեանի երախան Գեղամ, Մարտ 20ին:*

* * *

Խօսեցեալք

*Սարգիս Ղազարեան Տիգրանուհի Ասլանեան:*

*Յուրով Կոնչոյեան Ագաւնի Մարգարեան:*

Ամուսնացեալք —

*Սարգիս Մարաշլեան Ռեբեկա Գարաեան, Մարտ 9ին:*

*Կարապետ Մակարեան Գայեանէ Շաթրեան, Մարտ 9ին:*

---

### ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՈՎՈՒԻՆ

*Երբ տունդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ:*

*Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ:*

*Երբ գիտես թէ խռովեալներ կան:*

*Երբ գիտես թէ նորեկ կայ:*

*Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ:*

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավնիւ,—

—Թէլէֆօն 4138- W—

ԷՋՄԻԱԾԻՆ
Կրօնա-Բարոյական Ամսաթերթ
Հրատարակութիւն՝
ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ
Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար

*Նամակ, ծրար են. ղրկուելու են վարի հասցէով: Բաժանորդագինը կանխիկ է:*

VOL I, NO. 4, APRIL, 1918 PRICE 10 CENTS

ETCHMIADZIN
A RELIGIOUS MONTHLY PAPER
PUBLISHED BY
REV. V. V. KASPARIAN
P. O. Box 290 Fresno, Cal.
SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR